զէնքերով, թէ գնդակահարեալները ամէն բան խոստովանած են եւայլն: Այս առթիւ աւելցուց.

— « Ամէն մարդ գիտէ թէ սպիտակ ահաբեկիչները (հակա-բոլշեւիկներ) լայն հիւրընկալութիւն կը վայելեն կարգ մը եւրոպական երկիրներու մէջ, ուր բացէ ի բաց ահաբեկչական արարքներ կը դրդեն խորհրդային իշխանութեան ներկայացուցիչներուն դէմ եւ այդպիսի արարքներու պատրաստութեամբ կը զբաղին: Թէեւ անցագրի եւ ոստիկանական հսկողութեան խիստ կարգադրութիւններ կ'ըլլան Խ. Միութեան սահմանամերձ երկիրներուն մէջ, բայց սպիտակ պահակները ազատօրէն կ'անցնին Խ. Միութիւն, իրենց ոճիրները գործելու համար: Այս վիճակը պէտք է զայրոյթ պատճառէր բոլոր պարկեշտ մարդոց. հետեւաբար զարմանալի է որ դուք բողոքագիր կը ներկայացնէք ահաբեկիչներու գնդակահարման դէմ »:

## Նախկին վարչապետ Ֆր. Մարսալ

18 ԱՄԻՍ ԲԱՆՏԱՐԿՈՒԹԵԱՆ ԿԸ ԴԱՏԱՊԱՐՏՈՒԻ

Պ. Ֆրանսուա Մարսալ, նախկին վարչապետ, նախկին ծերակուտական եւ նախկին ելմտական նախարար, Փարիզի պատժական ատեանին կողմէ դատապարտուեցաւ 18 ամիս բանտարկութեան եւ 20,000 փրանք տուգանքի, վստահութեան զեղծում գործած եւ 29,500,000 փրանք վնաս պատճառած ըլլալով արեւմտեան Ափրիկէի առեւտրական ընկերութեան բաժնետէրերուն: Ուրիշ չորս տնօրէններ ալ դատապարտուեցան մէկէն երկու տարի բանտարկութեան եւ 10,000էն 20,000 փրանք տուգանքի: Իսկ Կոանժան, Ափրիկէի փրանսական դրամատան տնօրէնը, դատապարտուեցաւ հինգ հազար փրանք տուգանքի եւ վեց ամիս բանտարկութեան, պարտկած ըլլալով միւսներուն խարդախ գործառնութիւնները: Կասթօն Սէկէն, ընկերութեան տնօրէնը, առաւելագոյն պատիժը ստացաւ, դատապարտուելով երկու տարի բանտարկութեան եւ 25,000 փրանք տուգանքի:

## Մականունի կանոնագիրը փոխուեցաւ

*Թուրք թերթերը կը գրեն.—*

Կանոնագիրը պաշտօնաթերթին մէջ հրատարակուած ատեն, կարգ մը սխալներ սպրդած են: Պաշտօնաթերթը այս մասին կը հրատարակէ ճշդում մը, որուն համաձայն 6րդ յօդուածին վերջին հատուածը կը ջնջուի, իսկ 7րդ, 8րդ եւ 21րդ յօդուածներն ալ հետեւեալ ձեւը կ'առնեն.—

ՅՕԴ. 7.— Օտար ցեղի եւ ազգութեան անուններ չեն կրնար իբրեւ մականուն գործածուիլ:

ՅՕԴ. 8.— Աշիրէթի մը կամ գիւղախումբի մը (*գապիլէ*) հետ ո եւ է կապ արտայայտող մականունները չեն կրնար գործածուիլ, նոր ալ չեն կրնար ընտրուիլ:

ՅՕԴ. 21.— Ամուսնալուծման պարագային, հօրը իրաւունքն է ընտրել տղուն մականունը, եթէ նոյնիսկ տղան մօրը քովը գտնուի:

⁂ 7րդ յօդուածը որ այժմ բարեփոխուած է, նախապէս հետեւեալ ձեւն ունէր.— *եան, օֆ, էֆ, վիչ, իչ, իս, տիս, փուլօս, աքի, զատէ, մահտումու, վէլէտ վէ պին* եւ նման ուրիշ բառեր ազգութիւն ցուցնող եւ ուրիշ լեզուներէ առնուած մասնիկներ եւ բառեր կարելի չէ կցել մականուններուն: Կցուածներն ալ չեն կրնար գործածուիլ: Այդ մասնիկներուն փոխարէն *օղլու* կը դրուի:

Իսկ 8րդ յօդուածը նախապէս սա ձեւն ունէր.—

ՅՕԴ. 8.— *Արնաւուտ օղլու, քիւրտ օղլու*ի նման ընդհանուր կերպով ուրիշ ազգութիւն ցուցնող մականունները, ինչպէս նաեւ *Չէրքէզ Հասան օղլու, Պօշնաք Իպրահիմ օղլու*ի նման ուրիշ ազգութեանց հետ կապ ցուցնող մականունները, եւ *զօթի, կրանտի* նման ուրիշ լեզուներէ առնուած բառերը չեն կրնար գործածուիլ, եւ չեն կրնար նոր առնուիլ:

ԳՈՐԾԱԶՐԿՈՒԹԻՒՆԸ ՄԻՇՏ Կ'ԱՒԵԼՆԱՅ

Աշխատանքի նախարարութեան վերջին տեղեկագրին համաձայն, 1934ի վերջը նպաստընկալ գործազուրկներու թիւն էր 420,000, այսինքն 90,000 աւելի՝ 1933ի նոյն ժամանակաշրջանին վրայ: Նախընթաց շաբթուան հետ բաղդատելով, աւելցած են 14,197 գործազուրկներ:

ԳՆԴ. ԼԻՆՏՊԵՐԿ Կ'ԱՄԲԱՍՏԱՆԷ

*Օդանաւորդ Լինտպէրկի երախային առեւանգութեան եւ սպանութեան դատին առթիւ, հինգ ժամ վկայի աթոռին վրայ մնաց դժբախտ հայրը, որ պնդեց թէ մարդասպանը նոյն ինքն ամբաստանեալ Հաուփթմաննն է: Իր գլխաւոր փաստերէն մէկն է ամբաստանեալին ձայնը: Առաջին հարցաքննութեանց ատեն, երիտասարդ օդանաւորդը վարագոյրի մը ետին պահուելով, մտիկ ըրած էր: Լինտպէրկ մանրամասնօրէն պատմեց թէ ինչպէս գտած էր երախային դիակը, 1932 մարտ 1ին, ժամադիր ըլլալով գերեզմանատան մը մէջ:*

### ԶԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

*ԱԶԳԱՅԻՆ ՊԱՐԳԵՒԱԽԱՂԻ 6րդ եւ 7րդ վիճակահանութիւնը պիտի կատարուի յունուար 22ին, միեւնոյն օրը, միշտ Թրոքատէրոյի մէջ: Բնականաբար նախ վեցերորդը պիտի քաշուի, եւ բոլոր գործողութիւնները լրանալէ յետոյ, պիտի քաշուի եօթներորդը:*

*ԱՐԺԵԹՈՒՂԹԵՐՈՒ ԲԱՐՁՐԱՑՈՒՄԸ չաբաթ օր ալ շարունակուեցաւ սակարանին մէջ: Առ այժմ լռատեսութիւն կը տիրէ սեղանաւորական հրապարակին վրայ:*

*ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿԱՐԵՒՈՐ ՃԱՌ ՄԸ պիտի խօսի վարչապետը, յունուար 12ին, պարզելով իր առաջադրութիւնները: Կառավարութիւնը տնտեսական ծրագիր մը կազմած է, գործելու վերաբացման համար: Այդ ծրագիրը խորհրդարանին պիտի ներկայացուի վերաբացումէն անմիջապէս վերջը, որ տեղի կ'ունենայ յունուար 8ին:*

*ՍԻԹՐՕԷՆԻ գործարանները հազիւ վերաբացուած, տագնապը վերսկսաւ: Թերթերը կը գրեն թէ յունուար 3ին երկու հազար բանուորներ ընդունուած էին, բայց շատերը նորէն արձակուած են, ցնոր տնօրինութիւն: Պահանջատէրերն ալ պաստկտուած են:*

## Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԻՒՆ

### Փարիզ

*ՓՐՕՓԱԿԱՆՏԻ ՅԱՆՁՆԱԽՈՒՄԲԻ ԴԱՍԱԽՕՍԱԿԱՆ ժողովը վաղը երեկոյ ժամը 8.30ին* Café Voltaire *սրճարանը, Օտէոն Թատրոնի դիմաց:*

*ՌՈՍՏՈՄ խումբի վարչութիւնը ժողովի կը հրաւիրէ իր խումբի ընկերները 7 Յունուար Երկուշաբթի երեկոյ ժամը 8.30ին սովորական հաւաքատեղին:*

### ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

կը տօնուի Ֆր. կ. խաչի Ռօմանի մասնաճիւղին կողմէ այսօր, կիրակի երեկոյ ժամը 2ին ընկերվարականներու սրահին մէջ (Café Pommet). գեղարուեստական բաժին: Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ:



### ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐ

Ֆր. կ. խաչի Իսի լէ Մուլինոյի մասնաճիւղը կը տօնէ Մանուկներու Օրը 6 յունուար, կիրակի կէս օրէ վերջ ժամը 3ին գարակէօզեանի սրահին մէջ, 45, rue de la Défense.: Ծնունդի ծառ: խաղալիքներ, պտուղ եւայլն պիտի բաշխուի փոքրիկներուն: Մուտքը ազատ է փոքրիկներու համար, մեծերու համար 2 ֆրանք:



### ՑՈՒՑԱՏԵՍԻ

ՏԻԳՐԱՆԱԿԵՐՏԻ եւ Շրջ. Հայրենակց. Միութեան Փարիզի մասնաճիւղի վարչութիւնը ամդամական ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր հայրենակիցները 6 Յունուար, կիրակի երեկոյ ժամը 8ին, Au Clair de Lune սրճարանին վերնայարկը, մէթրօ՝ փլաս տ'իթալի:

ԱԼՖՈՐՎԻԼԻ Զէնկիլէրցիներու Հայրենակցական Միութեան ընդհ. ժողովը 6 յունուար, կիրակի կէս օրէ վերջ ժամը 1ին Հայ Ակումբին մէջ, 1 Bld. Carnot.


**Le Gérant: H. STEPHAN**
**Imprimerie A. DER (AGOPIAN)**
**17, Rue Damesme, PARIS (13)**





ՅԱՌԱՋ ԿԸ ԾԱԽՈՒԻ

22, **Boulevard St. DENIS.** Մէթրօ՝ St. DENISի դիմացը.

